Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 8 ԱՊՐԻԼ 1953

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԳ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—52—78



---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՄՈՒԼԻ ՕՐԸ

Մայիսի 5-ը սովետական մամուլի տրադիցիոն տոնն է։ Քառասունմեկ տարի առաջ, 1912 թվականի մայիսի 5-ին, Ռուսաստանում ռևոլյուցիոն շարժման վերելքի շրջանում, լույս տեսավ ամենօրյա մասսայական բանվորական «Պրավդա» թերթի առաջին համարը։

Դա իսկական տոն էր ռուսական պրոլետարիատի, մեր երկրի բոլոր աշխատավորների համար։

«Պրավդա»-ի երևան գալու պատվին որոշվեց մայիսի 5-ը համարել բանվորական մամուլի տոնի օր։

Ստեղծվելով Լենինի ցուցումով, Ստալինի անմիջական նախաձեռնությամբ՝ «Պրավդան» պարտիայի ձեռքում հզոր զենք հանդիսացավ իր կազմակերպությունների ամրապըն-

դելու, աշխատավոր մասսաների մեջ ազդեցություն նվաճելու գործում։

Բանվորները «Պրավդան» համարում էին իրենց մոտ ու հարազատ թերթը, վստահում էին նրան, ունկնդրում էին նրան։ «Պրավդա»-ի հետ աճեց ռևոլյուցիոն պրոլետարիատի մի ամբողջ սերունդ, որը հետո կատարեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան։

«1912 թվականի «Պրավդան»,— ասում է Ի. Վ. Ստալինը,— այն հիմքն էր, որ դրվեց բոլշևիզմի 1917 թվի հաղթանակի համար»։

Սովետական մամուլը նոր տիպի մամուլ է, ամենառևոլյուցիոն, ամենաառաջավոր և ամենահզոր մամուլն աշխարհում։ Լենինի և Ստալինի՝ սովետական մամուլի ստեղծողների աշխատություններում հանճարեղորեն տրված են նրա կլասիկ բնորոշումը, նրա նպատակներն ու խնդիրները։ Դեռևս 1901 թվականին իր «Ինչի՞ց սկսել» հայտնի հոդվածում Վ. Ի. Լենինը գրել է. «Լրագիրը ոչ միայն կոլեկտիվ պրոպագանդիստ ու կոլեկ-



տիվ ագիտատոր է, այլև կոլեկտիվ կազմակերպիչ է»։

1923 թվականին, ՌԿ(բ)Պ-ի 12-րդ համագումարում Կենտկոմի կազմակերպական հաշվետվության մեջ Ի. Վ. Ստալինը, բնորոշելով մամուլի դերը, ասել է.

«Մամուլը ամենահզոր զենքն է, որի օգնությամբ պարտիան ամեն օր, ամեն ժամ խոսում է բանվոր դասակարգի հետ իր, իրեն հարկավոր լեզվով։ Պարտիայի և դասակարգի միջև հոգևոր թելեր անցկացնելու այլ միջոցներ, ուրիշ այդպիսի ճկուն ապարատ բնության մեջ չկա»։

Սովետական մամուլը ուժեղ է իր բարձր գաղափարականությամբ, ճշմարտացիությամբ, մասսաների հետ ունեցած իր անխզելի կապերով։ Նա անողոք և անզիջում է ժողովրդի թշնամիների, պարտիայի թշնամիների նկատմամբ։ Սովետական մամուլը մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ գաղափարների անխոնջ պրոպագանդիստ է, Լենինի—Ստալինի պարտիայի հզոր զենքը՝ կոմունիզմի համար մղվող պայքարում։

Սովետական մամուլի պատմությունը անխզելիորեն կապված է մեր Կոմունիստական պարտիայի պանծալի պատմության հետ. այն հարուստ է ու ոգեշնչող, ինչպես մեր պարտիայի պատմությունը, այն հերոսական է ու մարտական, ինչպես մեր պարտիայի պատմությունը։

Սովետական մամուլը՝ Լենինի—Ստալինի հարազատ զավակը, երկար ու փառավոր ուղի է անցել՝ առաջին բանվորական թերթերից, թռուցիկներից, բրոշյուրներից և անլեգալ թերթիկներից մինչև սովետական հզոր տերության մասսայական, ժողովրդական մամուլը, որը վայելում է աշխատավորական լայն մասսաների ջերմ համակրանքը, որն անընդհատ ուժեղացնում է կապը պարտիայի և աշխատավոր մասսաների միջև։

Անցած բոլոր տարիներին, պայքարի բոլոր էտապներում սովետական մամուլը մեր պարտիայի ձեռքում հանդիսացել է հզոր զենք՝ մարդկության լավագույն ապագայի, կոմունիզմի համար նրա մղած պայքարում։

Լենինի—Ստալինի պարտիան իրականաց-



րեց անցած սերունդների դարավոր երազը՝ կառուցեց սոցիալիզմը և սովետական ժողովրդին հաղթականորեն առաջնորդում է դեպի կոմունիզմ։ Սոցիալիզմի կառուցման գործում սոցիալիստական շինարարության բոլոր էտապներում պարտիայի լոզունգներն ու դիրեկտիվները կենսագործելու ուղղությամբ աշխատավորներին մոբիլիզացնելու գործում անգնահատելի դեր է խաղացել սովետական մամուլը։ Մամուլը նպաստում է մասսաների քաղաքական և աշխատանքային ակտիվության զարգացմանը, նա արձագանքում և տոն է տալիս ժողովրդական մասսաների ստեղծագործ նախաձեռնությանը, թափանցում է մեր կյանքի բոլոր բնագավառները։

Ամենուրեք զգացվում է մեր թերթերի կազմակերպող և մոբիլիզացնող ուժը։ Թերթերը լինում են գործարաններում, հանքահորերում, կոլտնտեսային դաշտերում, գիտնականի լաբորատորիայում, մեր հեռավոր գյուղերում, կոմունիզմի մեծ կառուցումներում, խոսում են աշխատավորների հետ

իրենց հարկավոր, իրենց հասկանալի լեզվով, ի լուր ամենքի, ի լուր ամբողջ աշխարհի ազդարարում սովետական մարդկանց աշխատանքային քաջագործությունների և սխրագործությունների մասին։

Ուղեցույց ունենալով մեր պարտիայի 19-րդ համագումարի պատմական որոշումները և մեծ Ստալինի «Սոցիալիզմի էկոնոմիկական պրոբլեմները ՍՍՌՄ-ում» հանճարեղ աշխատությունը, Սովետական մամուլը ներկայումս պայքարում է ժողովրդական տնտեսության զարգացման հինգերորդ հնգամյա պլանը հաջողությամբ կատարելու համար։ Ամենուրեք՝ պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ, թերթերը բորբոքում են համաժողովրդական սոցիալիստական մրցության կրակը՝ հանուն բարձր արտադրողականության, հանուն պետական պլանների կատարման և գերակատարման։ Սովետական մարդիկ, ի դեմս մամուլի, տեսնում են ամեն մի նորի, առաջավորի համար հետևողական մարտնչողին, ժողովրդի շահերի արտահայտչին, խաղա-



ղության, դեմոկրատիայի, սոցիալիզմի համար մարտնչողին։

Սովետական մամուլը ամենաժողովրդական և ամենամասսայական մամուլն է աշխարհում։ Պատմությունը դեռ չի տեսել ուրիշ մի երկիր, որտեղ մամուլն աճեր այնպիսի արագությամբ և ունենար այնպիսի ազդեցություն մասսաների վրա, ինչպես մեզ մոտ՝ սոցիալիզմի երկրում։ Ներկայումս ՍՍՌՄ-ում լույս են տեսնում 7800 անուն թերթ, 1400 անուն ժուռնալ։ Թերթերի օրական տիրաժը կազմում է 33,5 միլիոն օրինակ՝ 12,5 անգամ ավելի, քան 1913 թվականին՝ ցարական Ռուսաստանում։ Սովետական Հայաստանում լույս են տեսնում 53 շրջանային, քաղաքային և ռեսպուբլիկական թերթեր։ 1913 թվականին Հայաստանում լույս է տեսել ընդամենը 6 անուն թերթ՝ աննշան տիրաժներով։

Սովետական Միությունում թերթը, ժուռնալը և գիրքը դարձել են լայն մասսաների սեփականությունը։ 1918—1950 թվականներին ՍՍՌՄ-ում հրատարակվել է 971 հազար անուն գիրք՝ ավելի քան 12,5 միլիարդ օրի-

նակ տիրաժով։ Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատությունները դարձել են մեր երկրի և արտասահմանյան երկրների աշխատավորների ամենասիրելի երկերը։ Մեծ տիրաժներով ՍՍՌՄ-ում լույս է տեսել Վ. Ի. Լենինի Երկերի ժողովածուն՝ 35 հատորով և Ի. Վ. Ստալինի Երկերի ժողովածուի 13 հատորը։

Մամուլի աճման թվերի մեջ, ինչպես հայելու մեջ, պարզ կերպով երևում է սովետական ժողովրդի կուլտուրական մակարդակի աճն ու զարգացումը։ Ներկայումս մեր երկրում թերթերը և ժուռնալները լույս են տեսնում ՍՍՌՄ ժողովուրդների 119 լեզուներով։ Այդ ժողովուրդներից 40-ը մինչև ռևոլյուցիան չունեին իրենց գիրն ու գրականությունը։

Սովետական մարդկանց համար թերթ կարդալը, թերթին մասնակցելը դարձել է կենսական անհրաժեշտություն։ Սովետական մարդիկ թերթերին դիմում են իրենց նվիրական խոհերով, մտքերով, խորհուրդներով, առաջարկներով։ Թերթերն անխզելի կապե-



րով կապված են աշխատավորական լայն մասսաների հետ։ Լենինը և Ստալինը ուսուցանում են, որ սովետական մամուլի ուժը մասսաների հետ ունեցած կապի մեջ է։

Վ. Ի. Լենինը 1918 թվականին «Մեր թերթերի բնույթի մասին» հոդվածում թերթերի առաջ խնդիր էր դնում՝ «Ավելի մոտ կյանքին։ Ավելի շատ ուշադրություն այն բանին, թե ինչպես բանվորական և գյուղացիական մասսան իրականում կառուցում է մի նոր բան իր առօրյա աշխատանքում»։ Ի. Վ. Ստալինը «Բրձոլա» թերթի № 1-ի առաջնորդողում 1901 թվականին գրել է, որ թերթի ամենաառաջին պարտականությունն է՝ որքան կարելի է մոտ կանգնել բանվորական մասսային, հնարավորություն ունենալ շարունակ ազդելու նրա վրա, լինել նրա գիտակից և ղեկավար կենտրոնը։

Կենսագործելով Լենինի և Ստալինի ցուցումները, սովետական մամուլը հազարավոր թելերով կապված է մեր երկրի բանվորների, գյուղացիների, ինտելիգենցիայի հետ։ Մեր

թերթերի թղթակիցների լայն ցանցը վառ ապացույց է այդ բանի։

Աշխատավորների նամակները, որոնք ժողովրդական նախաձեռնության կենդանի աղբյուր են, սնում են մեր թերթերին, ապահովում են կենդանի կապը թերթերի և ընթերցող մասսաների միջև։ Այդ կապի շնորհիվ, պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ, թերթերն իրենց էջերում սիստեմատիկ ծավալում են քննադատությունը և ներքևից եկող քննադատությունը, պայքարում են վերացնելու մեր աշխատանքներում եղած սխալներն ու թերությունները։

Պարտիայի ղեկավարությամբ մամուլը խարազանում, մերկացնում և լույս աշխարհ է հանում սովետական օրինականությունը խախտողներին, բյուրոկրատներին, որոնք ոտնահարում են ստալինյան կոնստիտուցիայով սովետական քաղաքացիներին տրված իրավունքները։

Սովետական մամուլը կանգնած է աշխատավորների իրավունքների պաշտպանության դիրքերում։



Սովետական մամուլը օրինակ է հանդիսանում ամբողջ աշխարհի պրոգրեսիվ մամուլի համար։ Նրանից սովորում, նրանից ուժ է քաղում ժողովրդական դեմոկրատիայի երկրների մամուլը, որը բանվորական և կոմունիստական պարտիաների ղեկավարությամբ պայքարում է նոր կյանքի կառուցման համար, սոցիալիզմի համար։

Սովետական մամուլը սկզբունքորեն տարբերվում է բուրժուական մամուլից։ Բուրժուական մամուլը ծառայում է արտոնյալ մարդկանց առանձին, թվական տեսակետից համեմատաբար աննշան խմբերին և արտահայտում է նրանց շահերը։ Այն սուտ և կեղծիքի մամուլ է։ Սովետական մամուլը, ընդհակառակը, ծառայում է ամբողջ ժողովրդին, ամբողջ հասարակությանը և արտահայտում է ժողովրդի շահերը, նրա ձգտումները, նրա ազնիվ և վեհ զգացումները։ Այն ճշմարտության և արդարության մամուլ է։

Սովետական երկրի մամուլը խաղաղության գործի պրոպագանդիստ է. այն մարդկանց անդուլ կերպով դաստիարակում է ին-

ինտերնացիոնալիզմի, ժողովուրդների բարեկամության և իրավահավասարության ոգով։

Սովետական մամուլի ուժի աղբյուրը մեր պարտիայի ղեկավարության մեջ է։ Մեր պարտիան տոն և ուղղություն է տալիս մեր թերթերի աշխատանքին, նրանց ամենօրյա գործունեությանը։

Զինված պարտիայի 19-րդ համագումարի պատմական որոշումներով, պարտիայի ղեկավարությամբ մեր մեծ երկրի մամուլը հաջողությամբ է կատարում սոցիալիզմից կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանում աշխատավորների կոմունիստական դաստիարակության պատվավոր և շնորհակալ խնդիրը։

ՀՈՎՀ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ

---

# ՀԱՂԹԱՆԱԿԻ ՕՐԸ

Ութ տարի առաջ սովետական ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ համաշխարհային-պատմական հաղթանակ տարավ գերմանական ֆաշիզմի դեմ երկրորդ համաշխարհային պատերազմում, որը ամենամեծ ու դաժան պատերազմն էր մինչ այդ մարդկային հասարակության պատմության մեջ տեղի ունեցած պատերազմներից։

Սովետական Միությունն իր վրա կրեց երկրորդ համաշխարհային պատերազմի գլխավոր ծանրությունը և վճռական դեր խաղաց հիտլերյան Գերմանիայի ու իմպերիալիստական Ճապոնիայի ջախջախման գործում։ 1941—1945 թվականների պատերազմի մեջ Սովետական Միության տարած հաղթանակը մեծագույն նշանակություն ունեցավ մեր երկրի ժողովուրդների և ամբողջ աշխարհի ժողովուրդների համար։

Հայրենական Մեծ պատերազմում հաղթանակ տանելով, սովետական ժողովուրդը

պաշտպանեց իր Հայրենիքի ազատությունն ու անկախությունը, պաշտպանեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի պատմական նվաճումները, փրկեց մեր Հայրենիքը ստրկացումից, պաշտպանեց աշխարհում ամենաառաջավոր սովետական հասարակարգը և ամրապնդեց Սովետական Միության անվտանգությունը։ Բայց դրանով չի սահմանափակվում երկրորդ համաշխարհային պատերազմում գերմանական ֆաշիզմի դեմ սովետական ժողովրդի տարած հաղթանակի պատմական նշանակությունը։ Նրա նշանակությունը նաև այն է, որ սովետական ժողովուրդը, նրա Զինված Ուժերը մարդկությունը փրկեց ֆաշիստական ստրկացման ըսպառնալիքից։

Պատերազմի ամենածանր օրերին, երբ թշնամին գտնվում էր Մոսկվայի տակ, ընկեր Ստալինը սովետական ռազմիկներին ասում էր.

«Ամբողջ աշխարհը ձեզ է նայում, որպես այն ուժին, որն ընդունակ է ոչնչացնելու գերմանական զավթիչների թալանչիական հրոսակախմբերը։ Ձեզ են նայում, որպես իրենց ազատարարների, Եվրոպայի ստրկացված ժողովուրդները, որոնք ընկել են գերմանական զավթիչների լծի տակ։ Ձեզ մեծ ազատագրա-



կան միսիա է բաժին ընկել։ Ուրեմն, արժանի՛ եղեք այդ միսիային»։

Մեր ռազմիկները կատարելով ազատագրական մեծ միսիա, սովետական անպարտելի դրոշը պատվով տարան Մոսկվայից, Ստալինգրադից մինչև Բեռլին և ազատագրեցին Եվրոպայի ժողովուրդներին ֆաշիստական կեղեքիչներից, Արևելյան Ասիայի ժողովուրդներին՝ ճապոնական զավթիչներից։

Հայրենական պատերազմում տարած իր հաղթանակով Սովետական Միությունը աշխարհի ժողովուրդներին փրկեց ֆաշիստական ստրկացումից։ Այդ նրա մեծագույն ծառայությունն է մարդկության պատմության առաջ։

Հայրենական Մեծ պատերազմում սովետական ժողովրդի տարած համաշխարհային-պատմական հաղթանակը հանդիսացավ կոմունիստական պարտիայի քաղաքականության իմաստունության ու հեռատեսության փայլուն հաստատումը։ Պատերազմի օրերին պարտիան, ինչպես և միշտ, ոգեշնչում էր մեր Հայրենիքի աշխատավորներին, կազմակերպում էր նրանց համաժողովրդական պայքարը գերմանական ֆաշիզմի դեմ։ Աշխարհում

ոչ մի պարտիա ժողովրդական մասսաների մեջ չի ունեցել և չունի այնպիսի հեղինակություն, ինչպիսին ունի Լենինի—Ստալինի փառապանծ պարտիան։

Սովետական Միության Հայրենական Մեծ պատերազմը ցույց տվեց, թե ինչի է ընդունակ այն ժողովուրդը, որը պաշտպանում է իր ազատությունն ու անկախությունը, իր սոցիալիստական մեծ նվաճումները։

ՍՍՌՄ-ի թշնամիները կարծում էին, թե սովետական հասարակարգը չի դիմանա պատերազմին և կքայքայվի։ Բայց նրանք չարաչար սխալվեցին։ Ինչպես պատմությունը ցույց տվեց, Սովետական Միությունը հաջողությամբ դիմացավ պատերազմի փորձություններին, ապացուցեց իր կենսունակությունը, հզոր ուժը և իր գերազանցությունը կապիտալիստական հասարակարգի նկատմամբ։

Պատերազմը ցույց տվեց, որ սովետական հասարակական կարգը իսկական ժողովրդական կարգ է, որն աճել է ժողովրդի ընդերքից և նրա հզոր աջակցությունն է վայելում, որ սովետական հասարակական կարգը հասարակության կազմակերպման միանգամայն կենսունակ և կայուն ձևն է։ Ավելին, պատերազմը ցույց տվեց, որ սովետական հասա-



րակական կարգը ավելի կենսունակ և ավելի կայուն է, քան ոչ-սովետական հասարակական կարգը, որ նա հասարակության կազմակերպման լավագույն ձևն է։ Հենց այդ առավելությունների շնորհիվ էր, որ սովետական ժողովրդին հաջողվեց ջախջախել այնպիսի մի լուրջ թշնամու, ինչպիսին ֆաշիստական Գերմանիան էր։

Պատերազմը ցույց տվեց, որ սովետական պետական կարգը միանգամայն կենսունակ է։ Սովետական պետական կարգը հանդիսացավ բազմազգ պետության օրինակ, որովհետև նրա մեջ ազգային հարցը լուծված է ավելի լավ, քան որևէ այլ պետությունում, որովհետև այդ կարգը հիմնվում է ազատ ժողովուրդների բարեկամության և եղբայրական համագործակցության վրա։

Հայրենական պատերազմում ժողովուրդների բարեկամությունն էլ ավելի կոփվեց ու ամրապնդվեց ռուս մեծ ժողովրդի գլխավորությամբ։ Հայրենական պատերազմում ռուս մեծ ժողովուրդը մեկ անգամ ևս ցայտուն կերպով իրեն դրսևորեց որպես ՍՍՌՄ-ի մեջ մտնող բոլոր ազգերից ամենաականավոր ազգը։ Ընկեր Ստալինը նշել է, որ այդ պատերազմում ռուս ժողովուրդը արժանացավ ընդհանուր ճանաչման, որպես ղեկավար ուժ

մեր երկրի ժողովուրդների մեջ։ Նա ունի պայծառ միտք, կայուն բնավորություն, խելացի համբերություն։ Ռուս ժողովրդի անսահման վստահությունը դեպի սովետական կառավարությունը, հավատը նրա քաղաքականության ճշտության նկատմամբ և ռուս ժողովրդի կողմից սովետական կառավարության ու կոմունիստական պարտիային ցույց տրված ամեն տեսակի աջակցությունը հանդիսացան «...այն վճռական ուժը, որն ապահովեց պատմական հաղթանակը մարդկության թշնամի ֆաշիզմի դեմ» (Ստալին, «Սովետական Միության Հայրենական Մեծ պատերազմի մասին»)։

Լենինի—Ստալինի պարտիան միավորեց, կազմակերպեց սովետական ժողովրդին, նրան համախմբեց իր հաղթական դրոշի շուրջը՝ ընդդեմ ֆաշիստական զավթիչների, անձնուրաց, հերոսական աշխատանքի՝ հանուն հաղթանակի թշնամու դեմ։

Պատերազմի ծանր փորձությունների տարիներին պարտիան է՛լ ավելի մերձեցավ, հարազատ դարձավ սովետական ժողովրդին։

Համաշխարհային երկրորդ պատերազմում մեր ձեռք բերած հաղթանակի շնորհիվ սոցիալիզմի և դեմոկրատիայի ուժերը անչափ աճեցին, իսկ կապիտալիզմի ուժերը թուլա-



ցան։ Սովետական պետության անշահախնդիր օգնության և բարոյական աջակցության շնորհիվ դեմոկրատական կարգեր հաստատվեցին Բուլղարիայում, Չեխոսլովակիայում, Ռումինիայում, Լեհաստանում, Հունգարիայում և Ալբանիայում։ Չինաստանում հաղթանակեցին ժողովրդա-դեմոկրատական կարգերը, Գերմանիայի արևելյան մասում հաստատվեցին դեմոկրատական կարգեր։ Այդ երկրների ժողովրդական մասսաները կոմունիստական և բանվորական պարտիաների ղեկավարությամբ, օգտագործելով ՍՍՌՄ-ի հարուստ փորձը և ստանալով նրա անշահախնդիր օգնությունը, ամուր կերպով ոտք են դրել սոցիալիզմի զարգացման ուղին։ Դրանում հենց արտահայտվում է հասարակության զարգացման մեջ ՍՍՌՄ-ի փորձի և նրա առաջատար դերի համաշխարհային պատմական նշանակությունը։

ՍՍՌՄ-ի շուրջը համախմբվեցին դեմոկրատական և առաջադեմ բոլոր ուժերը, որոնք Սովետական Միության հետ միասին պայքար են մղում խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար։

Հայրենական Մեծ պատերազմը հաղթա-

կանորեն ավարտելուց հետո, սովետական ժողովուրդը ձեռնամուխ եղավ խաղաղ ստեղ-
ծագործական աշխատանքի: Կոմունիստա-
կան պարտիայի ղեկավարությամբ մեր երկ-
րի ժողովուրդները պատմական կարճ ժամա-
նակամիջոցում ո՛չ միայն վերականգնեցին
երկրի տուժած շրջանները, արդյունաբերու-
թյունն ու գյուղատնտեսությունը, այլև ըղ-
ձալի չափերով գերազանցվեց նախապատե-
րազմյան մակարդակը:

Այժմ սովետական ժողովուրդը ձեռնամուխ
է եղել հինգերորդ հնգամյակի կենսագործ-
մանը, որը խոշոր առաջընթաց քայլ կհանդի-
սանա կոմունիզմի կառուցման գործում:
Հինգերորդ հնգամյակում ձեռք կբերվի սովե-
տական ժողովրդի նյութական բարեկեցու-
թյան և կուլտուրական նոր հզոր վերելք:

Հինգերորդ հնգամյակի վերաբերյալ պար-
տիայի 19-րդ համագումարի դիրեկտիվները
նորից հսկայական ուժով ցուցադրում են սո-
ցիալիզմի մեծագույն կենսական ուժը, նրա
հսկայական առավելությունները կապիտա-
լիստական կարգերի հանդեպ:

Կոմունիզմ կառուցելու ասպարեզում սո-
վետական ժողովրդի ձեռք բերած հաջողու-



թյունները ոգեշնչում են ժողովրդական դե-
մոկրատիայի երկրներին, ամբողջ աշխարհի
պրոգրեսիվ մարդկությանը, նրանց պայքարը
ավելի վճռական են դարձնում խաղաղու-
թյան, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար:

Եթե Սովետական Միությունը, սոցիալիզմի
լագերի բոլոր երկրները զարգանում են վեր-
ընթաց գծով, ապա կապիտալիստական աշ-
խարհի զարգացումը գնում է դեպի անկում:

Ամերիկա-անգլիական ռեակցիոն կառա-
վարական շրջանները երկրորդ համաշխար-
հային պատերազմից հետո սկսեցին նախա-
պատրաստվել համաշխարհային նոր պատե-
րազմի: Ամերիկայի ռեակցիոն իմպերիալիզ-
մը կեղծորեն բարբաջում է խաղաղության
մասին, բայց իրականում տենդորեն նախա-
պատրաստվում է նոր պատերազմի, կառու-
ցում է ռազմածովային և ռազմա-օդային
բազաներ աշխարհի բոլոր մասերում, տենդո-
րեն միլիտարիզացնում է երկիրը և ավելաց-
նում է ռազմական ծախսերը:

Կապիտալիզմի էկոնոմիկան խճճվել է ա-
վելի ու ավելի սրվող հակասությունների ճի-
րաններում:

ԱՄՆ-ի իմպերիալիստները ՍՍՌՄ-ի և ժո-

ղովրդական դեմոկրատիայի երկրների հաջողություններից գազազած, փորձում են իմպերիալիզմի անհաշտելի հակասություններից ելք գտնել նոր համաշխարհային պատերազմի նախապատրաստման ու սանձազերծման մեջ։ Բայց նրանց ագրեսիվ պլանները կդատապարտվեն անխուսափելի ձախողման, որովհետև «Երբեք չեն հաղթի այն ժողովրդին,— ասում է Լենինը,— որի մեջ բանվորներն ու գյուղացիներն իրենց մեծամասնությամբ իմացել, զգացել և տեսել են, որ իրենք պաշտպանում են իրենց սովետական իշխանությունը՝ աշխատավորների իշխանությունը, որը պաշտպանում են այն գործը, որի հաղթանակը իրենց և նրանց երեխաների համար կապահովի կուլտուրայի բոլոր բարիքներից, մարդկային աշխատանքի բոլոր ստեղծագործություններից օգտվելու հնարավորություն»։

Սովետական Միության ժողովուրդները վստահ քայլերով առաջ են գնում, հերոսաբար աշխատում են հինգերորդ հնգամյա պլանի իրականացման համար, բազմապատկում են իրենց Սոցիալիստական Հայրենիքի տնտեսական և ռազմական հզորությունը։



Մեր Հայրենիքն այժմ, ինչպես երբեք, հզոր է, լի կենսական ուժերով և ստեղծագործական եռանդով։ «Աշխարհում չկա՛ն այնպիսի ուժեր, որոնք կարողանային կանգնեցնել սովետական հասարակության հաղթական առաջընթացը դեպի կոմունիզմ»։

Ի հակադրություն ամերիկյան ռեակցիոն իմպերիալիզմի, որը ձգտում է համաշխարհային տիրապետության, Սովետական Միությունը հետևողականորեն պայքարում է խաղաղության համար։ Սովետական Միության հետ միասին խաղաղության համար պայքարում են սոցիալիզմի, խաղաղության, դեմոկրատիայի լագերի երկրները, որոնք իրենց շարքերում ունեն 800 միլիոնանոց անպարտելի մարդկային ուժ։

---

## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԷԼԵԿՏՐԻՖԻԿԱՑՈՒՄԸ

Սովետական պետության հիմնադիրներ Վ. Ի. Լենինը և Ի. Վ. Ստալինը հատուկ կարևորություն էին տալիս ամբողջ երկրի էլեկտրիֆիկացմանը։

Վ. Ի. Լենինի նշանավոր խոսքերը, թե «Կոմունիզմը՝ այդ սովետական իշխանությունն է պլյուս ամբողջ երկրի էլեկտրիֆիկացումը», ոգեշնչեցին մեր երկրի ժողովրդական մասսաներին կատարելու այն մեծ ծրագիրը, որը Լենինը անվանում էր Կոմունիստական պարտիայի երկրորդ ծրագիր։

Ինչպես Սովետական Միության բոլոր ռեսպուբլիկաներում, այնպես էլ Սովետական Հայաստանում վիթխարի աշխատանք է կատարված էլեկտրիֆիկացման ուղղությամբ։ Մեր ռեսպուբլիկայում էլեկտրիֆիկացման հիմքը դրվեց միայն սովետական իշխանության հաստատումից հետո։ Մինչ այդ եղած



մի քանի մանր էլեկտրակայանները առաջին համաշխարհային պատերազմի և այնուհետև հայ ժողովրդի ոխերիմ թշնամիների՝ դաշնակների տիրապետության ժամանակ լիովին քայքայվեցին։ 1913 թվականին Հայաստանում գործում էին ընդամենը 10 էլեկտրակայան, որոնց արտադրած էլեկտրաէներգիան տարեկան կազմում էր 5,1 միլիոն կիլովատ-ժամ։ Դաշնակների տիրապետության շրջանում՝ 1919 թվականին, էլեկտրակայանների թիվը կրճատվեց 7-ի, իսկ էլեկտրաէներգիայի քանակը՝ 1,7 միլիոն կիլովատ-ժամի։

Սովետական իշխանության հաստատումից հետո ժողովրդական տնտեսության զարգացումը կենսական անհրաժեշտություն դարձրեց ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության էլեկտրիֆիկացումը։ Դրա հետևանքով արդեն առաջին հնգամյակի վերջերին Հայկական ՍՍՌ-ում ստեղծվեց որոշ էներգետիկ բազա, որը հնարավորություն տվեց զարգացող ժողովրդական տնտեսությունը ապահովելու էլեկտրաէներգիայով։ Այդ ժամանակներում էլեկտրակայանների թիվը հասավ 29-ի, նրանց արտադրած էլեկտրաէներգիան մի քանի տասնյակ անգամ գերազանցեց 1913 թվականին եղած մակարդակը։

Էլեկտրիֆիկացման գործը հետագա զար-

գացում ստացավ երկրորդ հնգամյակում, որը բազա հանդիսացավ ծանր արդյունաբերության մի շարք այնպիսի ճյուղերի լայն զարգացման համար, որոնք պահանջում են մեծ քանակությամբ էժան էլեկտրաէներգիա։ Այդպես ծնունդ առան Կիրովականի Քիմիական գործարանը, Դավալուի Ցեմենտի գործարանը, Երևանի Կարբիդի գործարանը, որոնք որոշում են ռեսպուբլիկայի համապատասխան շրջանների արդյունաբերական դեմքը։

Երկրորդ հնգամյակի սկզբներին սկսվեց Սևան-Զանգու կասկադի առաջնեկի՝ Քանաքեռի հիդրոէլեկտրակայանի կառուցումը, որը իր կարողությամբ կասկադի երկրորդ կայանն է։

Սևան-Զանգու կասկադի ստեղծման պրոբլեմը հիմնված է Սևանի լճի ջրերի դարավոր պաշարները իռիգացիայի և էներգետիկայի նպատակներով օգտագործելու իդեայի վրա։ Սևանի լճի ջրերի օգտագործման իդեայի էությունն այն է, որ լճի տարածությունը կրճատելու միջոցով պետք է նվազեցնել նրա մակերեսի ջրերի գոլորշիացումը և դրա հետևանքով ավելացող ջրերը օգտագործել հողերը ոռոգելու և էլեկտրաէներգիա ստանալու համար։



Մինչև Սևանի լճի դարավոր պաշարների օգտագործումը տարեկան գոլորշիանում և զուր կորչում էր 1200 միլիոն խոր. մետր ջուր։ Այժմ այդ ջուրը կօգտագործվի էլեկտրաէներգիա ստանալու և կուլտուրական դաշտերը ոռոգելու համար։

Այդ հիման վրա իրականացվում է Սևանի լճի ջրերի կոմպլեքսային օգտագործման նախագիծը, որը նախատեսում է հզոր էներգետիկ կասկադի կառուցումը Զանգու գետի վրա և հսկայական տարածություն կազմող ամենաարգավանդ հողերի ոռոգումը Արարատյան դաշտավայրում։

Սևան-Զանգու կասկադը կազմված է լինելու հիդրոէլեկտրակայանների ութ աստիճանից, որոնց ընդհանուր կարողությունը զգալիորեն կգերազանցի Դնեպրոգէսի կարողությանը։

Քանաքեռգէսի կառուցմամբ սկիզբ դրվեց Սևան-Զանգու կասկադի նախագծի իրագործմանը։ Դրա հետ միասին տեղի էր ունենում առաջին հնգամյակում գործարկված Ձորագէսի և Լենինականի հիդրոէլեկտրակայանների նախագծային կարողությունների յուրացման աշխատանքը։

Ձնայած էլեկտրաէներգիայի արտադրության համեմատական ուժեղ աճին, այնուա-

մենայնիվ էներգետիկան ի վիճակի չէր բա-
վարարելու ռեսպուբլիկայի տարեցտարի ա-
ճող պահանջը էլեկտրաէներգիայի նկատ-
մամբ: Այդ դրությունը էլ ավելի էր սրվում
նրանով, որ շրջանային հիդրոէլեկտրակա-
յանները գործում էին անջատ: Ուստի Քանա-
քեռգէսի կառուցմամբ ձեռնարկվեց Հայաս-
տանի շրջանային հիդրոէլեկտրակայանների
զուգահեռ աշխատանքին, որոնք Քանաքեռ-
գէսի գործարկումից հետո հաղորդագծերով
միացվեցին մի ընդհանուր սիստեմում:

Դրա հետ միասին, զգալի զարգացում ըս-
տացան կոմունալ, ֆաբրիկա-գործարանային
և գյուղական հիդրոէլեկտրակայանները: Այդ-
պիսի կայանների թվին պետք է դասել՝ Շա-
քիգէսը, Մեղրիգէսը, Անիպեմզայի ջերմա-
կայանը և մի շարք ավելի փոքր կայաններ:
Այդ ժամանակաշրջանին է վերաբերում և
Ղափանի հիդրոէլեկտրակայանի ընդլայնու-
մը: Այսպիսով, արդեն 1938 թվականին
էլեկտրակայանների թիվը հասավ 51-ի:

Էներգետիկ բազայի զգալի ուժեղացումը
երկրորդ հնգամյակում իր հերթին նպաստեց
մեր ռեսպուբլիկայի ժողովրդական տըն-
տեսության հետագա անշեղ աճմանը: Հայ-
էներգոյի սիստեմի հիդրոէլեկտրակայան-
ները 1940 թվականին 15 տոկոսով շատ



էլեկտրաէներգիա էին արտադրում, քան
1938 թվականին: Էլեկտրաէներգիայի հիմ-
նական սպառողներն էին՝ Քիմիական ար-
դյունաբերության, գունավոր մետալուրգիա-
յի, շինանյութերի և արդյունաբերության
մյուս ճյուղերի ձեռնարկությունները:

Համեմատաբար մեծ քանակությամբ էլեկ-
տրաէներգիա էր ծախսվում բնակչության
կոմունալ-կենցաղային և կուլտուրական կա-
րիքների բավարարման համար:

Էլեկտրակայանների կարողության և էլեկ-
տրաէներգիայի արտադրության ավելացումը
շարունակվում էր նաև պատերազմի տարի-
ներին: 1943 թվականին շահագործման հան-
ձընվեց Քանաքեռգէսի երկրորդ հերթը և ծա-
վալվեց լճային (այժմ Սևանի) հիդրոէլեկ-
տրակայանի և ջրահավաք կառույցի շինա-
րարությունը:

Այդ ժամանակաշրջանում ևս առաջվա նը-
ման, էլեկտրաէներգիայի ամենախոշոր ըս-
պառողներն էին ծանր արդյունաբե-
րության ճյուղերի՝ հետագա զարգացման հա-
սած ձեռնարկությունները: Էլեկտրաէներ-
գիա սպառողների ընդհանուր թվում այդ
ձեռնարկությունների տեսակարար կշիռը
կազմում էր մոտավորապես 55 տոկոս:

Չորրորդ հնգամյակի սկզբներին Հայէներ-

գույի սիստեմն իր կազմում ուներ շրջանային նշանակություն ունեցող հինգ հիդրոէլեկտրակայան, որոնք հաղորդագծերով միացել էին իրար՝ կազմելով մի ընդհանուր էներգետիկ փունջ։ Տասը տարվա ընթացքում, 1938 թվականից սկսած, շրջանային ենթակայության էլեկտրակայանների նախագծային կարողությունն ավելացավ 47,3 տոկոսով։ 1946 թվականին սկսվեց Սևան—Զանգու կասկադի ամենահզոր հիդրոէլեկտրակայանի՝ Գյումուշգէսի շինարարությունը։ Այդ կապակցությամբ էլ սկսվեց գունավոր մետալուրգիայի և քիմիական արդյունաբերության մի շարք խոշոր էլեկտրակլանիչ ձեռնարկությունների կառուցումը։

1950 թվականին էլեկտրակայանների նախագծային կարողությունը, 1948 թվականի համեմատությամբ, ավելացավ 43,3 տոկոսով։ Նույն այդ ժամանակամիջոցում էլեկտրաէներգիայի արտադրությունն ավելացավ 78 տոկոսով։ Էլեկտրակայանների կարողության աճը և էլեկտրաէներգիայի արտադրության ավելացումը արդյունք է այն բանի, որ 1949 թվականին շահագործման հանձնվեց Սևանգէսը, Ձորագէսի երրորդ ագրեգատը, ավելացվեց Քանաքեռգէսի կա-



րողությունը և բարելավվեց մյուս էլեկտրակայանների աշխատանքը։

Պարտիայի 19-րդ համագումարը նշեց, որ ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում արտադրության աճման և տեխնիկական պրոգրեսի՝ հինգերորդ հնգամյակում նախատեսված տեմպերի իրականացման կարևորագույն պայմանն է երկրի հետագա էլեկտրիֆիկացումը։ Գյումուշգէսի գործարկումով ռեսպուբլիկայում էլեկտրաէներգիայի արտադրությունը կավելանա երկու անգամ։ Գյումուշգէսը մի նոր նշանակալից էտապ կհանդիսանա Սովետական Հայաստանի էկոնոմիկայի հետագա հզոր զարգացման գործում։

Առանձնապես փայլուն հեռանկարներ են բացվում ռեսպուբլիկայի արդյունաբերության և ամենից առաջ ծանր ինդուստրիայի, մասնավորապես՝ գունավոր մետալուրգիայի, քիմիական արդյունաբերության և մեքենաշինության առաջ, որոնց հիմքն է կազմում տեղական հումքի ամենահարուստ պաշարների օգտագործումը։

Հետպատերազմյան հնգամյակի ընթացքում Հայաստանում ստեղծվել են ծանր արդյունաբերության խոշոր օբեկտներ, որոնք մինչև այժմ իրենց լիակատար կարողու-

թյամբ չէին աշխատում՝ էլեկտրաէներգիայի
պակասության պատճառով։ Գյումուշգէսի
գործարկումից հետո լիակատար կարողու-
թյամբ կաշխատեն քիմիական և մետալուր-
գիական արդյունաբերության այժմ գործող
բոլոր ձեռնարկությունները և արագ կերպով
կաճի ռեսպուբլիկայի ծանր արդյունաբերու-
թյունը։

Գյումուշգէսի էլեկտրաէներգիայի բազայի
վրա հինգերորդ հնգամյակի վերջերին ռես-
պուբլիկայի արդյունաբերության համախառն
արտադրանքի թողարկումը, 1952 թվականի
համեմատությամբ, կաճի մոտավորապես 60
տոկոսով։ Ավելի քան բարձր կլինեն ծանր
արդյունաբերության ճյուղերի զարգացման
տեմպերը, որոնց համախառն արտադրանքը
հնգամյակի առաջիկա երեք տարում կաճի
մոտավորապես երկու անգամ։ Առանձնապես
բարձր տեմպերով կաճի մետալուրգիական,
մեքենաշինական և քիմիական արդյունաբե-
րությունը, որոնց զարգացումը մինչև Գյու-
մուշգէսի գործարկումը փոքր-ինչ կասեցվում
էր էլեկտրաէներգիայի պակասության պատ-
ճառով։

Հայկական ՍՍՌ-ում շինանյութերի ար-
դյունաբերությունը, իր ամենահարուստ բը-



նական ռեսուրսների համեմատությամբ, մին-
չև այժմ բավականաչափ չի զարգացել։

Գյումուշգէսի գործարկումը հնարավորու-
թյուն կտա շինանյութերի հանույթն ու ար-
տադրությունը էլեկտրիֆիկացնելու միջոցով
շինանյութերի արդյունաբերության մինիստ-
րության, ներառյալ միութենական ենթակա-
յության, ձեռնարկությունների համախառն
արտադրանքի ծավալը 1955 թվականին, 1953
թվականի պլանի համեմատությամբ, ավե-
լացնել մոտավորապես 67 տոկոսով։

Ծանր արդյունաբերության ճյուղերի հետ
միասին հետագա զարգացում կստանան նաև
թեթև և սննդի արդյունաբերության ճյուղե-
րը։ Թեթև և սննդի արդյունաբերության
համախառն արտադրանքը 1952 թվականի
համեմատությամբ 1955 թվականին կաճի
մոտավորապես 76 տոկոսով։

Համարյա թե կկրկնապատկվի ռեսպուբլի-
կայի քաղաքների և քաղաքատիպ վայրերի
բնակչության կոմունալ-կենցաղային կարիք-
ների համար բաց թողնվող էլեկտրաէներգիա-
յի քանակը։ Բնակչությունը էլեկտրաէներգիա
կստանա անխափան կերպով։

Նախառևոլուցիոն Հայաստանում՝ թե ցա-
րական իշխանության ժամանակ և թե դաշ-

նակների տիրապետության օրոք խոսք ան-
գամ չէր կարող լինել գյուղերի էլեկտրիֆի-
կացման մասին։ Չնայած ջրա-էներգետիկ
հարուստ հնարավորություններին, որ ստեղ-
ծում էր կտրտված ռելեֆը, մեծ անկում ու-
նեցող մեծ ու փոքր գետերի առկայությունը,
նախառևոլյուցիոն Հայաստանում գոյություն
ուներ գյուղական նշանակություն ունեցող
միայն մեկ էլեկտրակայան՝ ընդամենը 20
կիլովատ կարողությամբ։ Միայն Սովետա-
կան իշխանության հաստատումից հետո
ռեսպուբլիկայի աշխատավոր գյուղացիու-
թյունը հնարավորություն ստացավ գյուղա-
տնտեսական արտադրության մեջ և գյուղի
կենցաղում լայնորեն արմատավորելու էլեկ-
տրաէներգիան։ Արդեն 1930 թվականին
գյուղական էլեկտրակայանների կարողու-
թյունը հասնում է մի քանի հարյուր կիլովա-
տի։ Գյուղական էլեկտրակայանների շինա-
րարությունը առանձնապես մեծ չափով ուժե-
ղանում է կոլտնտեսային կարգեր հաստատե-
լուց հետո։ Հայրենական Մեծ պատերազմի
սկզբներին նրանց կարողությունը հասնում
էր մի քանի հազար կիլովատի։ Գյուղա-
կան էլեկտրակայանների կարողության ա-
վելացման աշխատանքը կանգ չէր առնում



նաև Հայրենական պատերազմի ծանր տա-
րիներին։

1948 թվականի սկզբներին Հայաստանի
Կոմունիստական պարտիայի Կենտկոմը և
Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետը հա-
տուկ որոշում ընդունեցին գյուղատնտեսու-
թյան էլեկտրիֆիկացման մասին, որով նա-
խատեսվում էր մոտակա երեք տարում էլեկ-
տրիֆիկացնել Հայկական ՍՍՌ բոլոր կոլ-
տնտեսությունները, սովխոզները և ՄՏԿ-նե-
րը։

Պատերազմից առաջ Հայաստանում էլեկ-
տրիֆիկացված կոլտնտեսությունների թիվը
հասնում էր 156-ի։ Պատերազմի տարիներին
տեղի էր ունենում գյուղատնտեսության էլեկ-
տրիֆիկացման հետագա աճը։ Էլեկտրիֆի-
կացված կոլտնտեսությունների թիվը 1948
թվականին հասավ 303-ի։

1949 թվականին ռեսպուբլիկայում գործում
էին 48 գյուղական էլեկտրակայաններ (ներ-
առյալ միկրոգէսերը), իսկ էլեկտրիֆիկաց-
ված կոլտնտեսությունների թիվը, 1947 թվա-
կանի համեմատությամբ, ավելացավ 56 տո-
կոսով։ 1950 թվականին գյուղական էլեկտրա-
կայանների կարողությունն ավելացավ 44
տոկոսով։

1951—1952 թվականներին գյուղական էլեկտրակայանների կարողությունն ավելացավ ավելի քան երկու անգամ։ 1952 թվականի վերջերին կոլտնտեսությունների երեք քառորդն արդեն էլեկտրիֆիկացվել էր։ Գյուղական էլեկտրակայանների կողքին, ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը մեծ քանակությամբ էլեկտրաէներգիա է ստանում Հայէներգոյի սիստեմից, որը հնարավորություն է տալիս էլեկտրաէներգիան լայնորեն արմատավորել գյուղատնտեսական արտադրության մեջ։ Ներկայումս մեքենա-տրակտորային կայանների ավելի քան 80 տոկոսը էլեկտրիֆիկացված է։

Լ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

(Հայկական ՍՍՌ Պետպլանի նախագահ)

---

ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

## ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԸ ՄԱՍՍԱՅԱԿԱՆԱՑՆՈՒՄ ԵՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԸ

Սովետական ժողովուրդը մեծագույն խանդավառությամբ պայքարում է մեր պարտիայի 19-րդ համագումարի առաջադրած հոյակապ խնդիրների կենսագործման համար։ Գործարաններում և ֆաբրիկաներում, հանքահորերում և նորակառույցներում, կոլտնտեսային գյուղում և ամենուրեք գնալով ավելի ու ավելի լայնորեն է ծավալվում սոցիալիստական մրցությունը ստալինյան հինգերորդ հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար։

Կատարելով սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները, արտադրության հարյուրավոր առաջավոր-

ներ ամեն օր հանդես են բերում աշխատանքի արտադրողականությունը և թողարկվող արտադրանքի որակը բարձրացնելու, նոր ձևով աշխատելու փայլուն օրինակներ։

Պարտիայի 19-րդ համագումարում ընկ. Գ. Մալենկովը խոսելով պարտիայի խնդիրների մասին, նշեց, որ անհրաժեշտ է «Ամեն կերպ զարգացնել մեր Հայրենիքի աշխատավորների ստեղծագործական նախաձեռնությունը, ավելի լայնորեն ծավալել սոցիալիստական մրցությունը, անդուլ հոգատարություն ցուցաբերել այն բանի նկատմամբ, որպեսզի սոցիալիստական շինարարության բոլոր տեղամասերում ստեղծվեն աշխատանքը նոր ձևով կարգավորելու դրական օրինակներ, աշխատող ամբողջ մասսայի մեջ համառատակամորեն տարածել այդ լավ օրինակները, այն հաշվով, որպեսզի աշխատանքի ճակատում ավելի ու ավելի մեծ չափով իրականացվի կողմնորոշումը դեպի մեր հասարակության առաջավոր աշխատողները»։

Առաջավորների աշխատանքի դրական



օրինակների պաշտպանման, փորձի տարածման, այն բոլոր աշխատողների սեփականությունը դարձնելու գործում մեծ անելիքներ ունեն ագիտատորները։

Ագիտատորի առաջնահերթ խնդիրն է՝ ընդհանրացնել առաջավորների աշխատանքի հարուստ փորձը, տեսնել նորը, լավը, առաջադիմականը, կարողանալ իրեն հանձնարարված տեղամասի աշխատողների մեջ ամեն կերպ տարածել առաջավոր փորձը, դրանով օգնել ետ մնացողներին բարձրանալու առաջավորների մակարդակին։

Իր առջև դրված այդ պատվավոր խնդիրը լավագույն ձևով կատարելու համար ագիտատորը նախ պետք է ճանաչի իր ձեռնարկության, կոլտնտեսության առաջավորներին, մանրամասն ծանոթանա նրանց աշխատանքի մեթոդներին ու ձևերին, ապա լավ ուսումնասիրի նաև Սովետական Միության ռեսպուբլիկաների առաջավորների փորձը։ Արտադրության առաջավորների փորձի մասսայականացման և ամեն կերպ տարածման համար ագիտատորը պետք է

օգտագործի ագիտացիոն աշխատանքի բազմապիսի ձևեր և մեթոդներ։ Այդ ձևերից մեկը հանդիսանում է ագիտատորի զրույցը առաջավորների փորձի մասին. նախքան զրույցն սկսելը, ագիտատորը պետք է ուսումնասիրի և լավ ծանոթանա առաջավորների փորձին, ընտրի և դասավորի առաջնակարգ և երկրորդական փաստերը, նշի այն կարևոր հարցերը, որոնց վրա հատկապես պետք է սրի ունկնդիրների ուշադրությունը։ Զրույցը նպատակասլաց, տպավորիչ, կոնկրետ, ներգործուն դարձնելու համար անհրաժեշտ է, որ ագիտատորը հավաքի ցուցադրական նյութեր և փաստեր։ Զրույցի ընթացքում ագիտատորը պետք է առաջավորներին ներկայացնի ոչ թե ընդհանրապես, ընդհանուր խոսքեր ասելով նրանց մասին, այլ անհրաժեշտ է կոնկրետ օրինակներով նկարագրել նրանց աշխատանքի մեթոդները։

Առաջավորների փորձի շուրջը հետաքրքիր, նպատակասլաց ու բովանդակալից զրույցներ է անցկացնում օրինակ՝ Բերիայի



շրջանի Նոր Կողբի Վորոշիլովի անվան կոլտնտեսության ագիտատոր Գալուստ Գալստյանը։ Այսպես, նա հետաքրքիր, ուսանելի զրույց կազմակերպեց կոլտնտեսության լավագույն կթվորուհի Վարսե Անտոնյանի աշխատանքի մասին, բազմաթիվ կոնկրետ օրինակներով ցույց տալով, թե նա ինչպես է խնամում իրեն հանձնված անասուններին, ինչպես է անխախտ կերպով կատարում զոոտեխնիկայի բոլոր պահանջները, որոնց շնորհիվ իր խնամած յուրաքանչյուր ֆուրաժային կովից 1952 թվականին նա ստացել է 3022 լիտր կաթ։

Լինելով առաջավոր այգեգործ, ագիտատոր Գալստյանը իր ունկնդիրներին հենց ինքը անձնական լավագույն օրինակ է ցույց տալիս։ Այգեփորի ժամանակ, օրինակ, նա օրական 400 քառակուսի մետրի փոխարեն կատարում էր 550—600 քառ. մետր այգեփոր։ Ագիտատոր Գ. Գալստյանը հենց իր աշխատանքի այդ փորձի մասին հանգամանորեն պատմեց ունկնդիրներին, ցույց տվեց, թե ինչպես է ինքը աշխատում։ Այդ հանգա-

մանքը մեծապես օգնեց այգեգործ կոլտնտեսականներին ավելի լավ աշխատելու։

Ագիտատոր Գալստյանը միանգամայն ճիշտ է վարվում և իր զրույցների ժամանակ բացի աշխատանքի դրական փորձի մասին պատմելուց, նաև քննադատում է ետ մնացողներին, ցույց տալով նրանց վատ աշխատելու պատճառները։ Այդպիսով նա հասնում է իր նպատակին՝ օգնում է ետ մնացողներին՝ առաջավորներին հասնելու համար։

Իր զրույցներից մեկի ժամանակ, օրինակ, ագիտատոր Գալստյանը քննադատելով Մ. Ավետիսյանին, որը չէր կատարում այգեփորի սահմանված պլանը, բրիգադայի առաջավոր կոլտնտեսականների օրինակով ցույց տվեց, թե ինչպես պետք է աշխատել։ Այդ զրույցից հետո Մ. Ավետիսյանը սկսեց կատարել այգեփորի իր պլանը և բարձրացրեց աշխատանքի որակը։

Առաջավորների մասին զրույցից բացի, ագիտատորը կարող է կազմակերպել հենց



իրենց՝ առաջավորների ելույթները բրիգադներում, ցեխերում, օղակներում։ Վերջերս Բերիայի շրջանի Նոր Կողբի Վորոշիլովի անվան կոլտնտեսության առաջին բրիգադայի առաջին օղակում ագիտատորի նախաձեռնությամբ այգեփորի աշխատանքների մասին ելույթ ունեցավ Լենինի շքանշանակիր Անուշավան Կիլինյանը, որը պատմեց իր աշխատանքի մեթոդների և այն միջոցառումների կիրառման մասին, որի շնորհիվ ինքը բարձր ցուցանիշների է հասել։

Ագիտացիոն աշխատանքի բազմապիսի ձևերից մեկն էլ բարձրաձայն ընթերցանությունն է։ Մամուլում ագիտատորները հաճախ հանդիպում են այնպիսի հոդվածների, որտեղ հետաքրքիր տեղեկություններ կան առաջավորների մասին։ Կամ հենց առաջավորների ելույթները։ Ագիտատորը այդ նյութերը պետք է օգտագործի իր զրույցների ժամանակ կամ բարձրաձայն ընթերցի ունկնդիրների համար։

Ընթերցանությունը լավագույն ձևով է անցկացնում Բերիայի Նոր Կողբի Վորոշիլո-

վի անվան կոլտնտեսության ագիտատոր Արեհատ Շահբազյանը։ Նա նախօրոք որոշում է, թե ինչն է կարևոր ունկնդիրների համար, ընտրում է կարևոր հարցերը, պարզաբանում իր համար, կարգում է անհրաժեշտ նյութը և նոր սկսում պարապմունքը։ Ընթերցանությունից հետո սկսվում է ակտիվ զրույցը տվյալ թեմայի շուրջը, որը հմտորեն կարողանում է վարել ագիտատորը։

Ագիտացիոն աշխատանքի լավագույն փորձ ունի նաև Երևանի Ավտոդետալ գործարանի ագիտկոլեկտիվը։ Ագիտկոլեկտիվը պարտիական կազմակերպության ղեկավարությամբ ոչ միայն մասսայականացնում է գործարանի կամ ռեսպուբլիկայի առաջավորների փորձը, այլև ուշադրությամբ հետևվում է Սովետական Միության գործարանների և ֆաբրիկաների առաջավորներին, ուսումնասիրում է նրանց փորձը, նորարարական առաջարկները և ապա այն մասսայականացնում և տարածում գործարանում։ Այսպես, Կույբիշևի հաստոցային շինարարական գործարանի նորարար խառատ Վա-



սիլի Կոլեսովի մեթոդը մեծ հետաքրքրություն առաջացրեց Ավտոդետալ գործարանի կոլեկտիվում։

Վասիլի Կոլեսովի մեթոդով առաջին անգամ սկսեց աշխատել խառատ Հակոբ Հակոբյանը, որը այժմ արտադրում է երկու և կես անգամ ավելի դետալ։ Հ. Հակոբյանը հաճախ ագիտատորների նախաձեռնությամբ զրույցներ է ունենում ցեխերում, բրիգադաներում, մանրամասնորեն պատմում է նոր մեթոդի և նրա տեխնիկային տիրապետելու մանրամասնությունների մասին, ունկնդիրներին ծանոթացնում է Վասիլի Կոլեսովից իր ստացած նամակին, ցույց է տալիս Կոլեսովի ուղարկած նոր կտրիչի անկյուններ սրելու գծագիրը և հենց գծագրի վրա մանրամասնորեն բացատրում է, թե ինչպես պետք է այդ մեթոդով աշխատել։

Գործարանի պարտիական կազմակերպության առաջադրանքով ագիտկոլեկտիվը բոլոր ցեխերում ու տեղամասերում լայնորեն մասսայականացրեց Վ. Կոլեսովի մեթոդով աշխատող Հ. Հակոբյանի հաջողությունները՝

մանրամասն պարզաբանելով, թե ինչպես է նա աշխատում նոր ձևով։

Ագիտացիոն-մասսայական այդպիսի լայն, նպատակասլաց աշխատանքը փայլուն արդյունքներ տվեց. այժմ գործարանում մեծ թվով բանվորներ աշխատում են Վ. Կոլեսովի մեթոդով։

Արտադրության առաջավորների փորձի մասսայականացման ու տարածման գործում խոշոր դեր է խաղում նաև ցուցադրական ագիտացիան։

Ագիտկոլեկտիվները, ագիտատորները պետք է հատուկ ուշադրություն դարձնեն ցուցադրական ագիտացիան արդյունավետ ու նպատակասլաց կազմակերպելու վրա։ Հարկավոր է լոզունգների, պլակատների, դիագրամաների, ցուցափեղկերի և ցուցադրական այլ նյութերի միջոցով պրոպագանդել սոցիալիստական մրցության առաջավորների աշխատանքի դրական օրինակները։

Ագիտատորների ձեռքին ագիտացիոն աշխատանքի լավագույն զենք են հանդիսա-



նում նաև պատի թերթերը, իլյիչովկաները, կայծակ թերթիկները և ստորին մամուլի այլ տեսակները, որոնք որքան օպերատիվ, կենդանի կերպով լուսաբանեն առաջավորների աշխատանքի փորձը, այնքան գործուն և արդյունավետ կլինի քաղաքական ագիտացիան։

Մեր հասարակության պայմաններում սոցիալիստական շինարարության յուրաքանչյուր տեղամասում հսկայական դեր է խաղում աշխատանքում ցույց տրվող դրական օրինակը։ Ուստի բոլոր ագիտատորների առաջնահերթ խնդիրն է՝ սիստեմատիկաբար մասսայականացնել արտադրության առաջավորների աշխատանքի փորձը և հասնել գործնական արդյունքի։

Գ. ԱՐԾՐՈՒՆԻ

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## ՄԱՅԻՍԻ 9-Ը ՀԱՂԹԱՆԱԿԻ ՏՈՆԻ ՕՐՆ Է

*1. Ֆաշիստական Գերմանիայի դեմ Սովետական Միության տարած հաղթանակի համաշխարհային պատմական նշանակությունը։*

*2. Ընկեր Ստալինը մեր երկիրը հաղթանակի հասցրեց ֆաշիզմի դեմ երկրորդ համաշխարհային պատերազմում։*

*3. Սովետական Միության ուժի և հզորության աղբյուրները Հայրենական Մեծ պատերազմում։*

*4. Սովետական պետության պայքարը հետպատերազմյան շրջանում խաղաղության համար ամբողջ աշխարհում։*

*5. Սովետական Միության հզորության հետագա ամրապնդումը հանդիսանում է սովետական մարդկանց սրբազան պարտականությունը։*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ


Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— «Սովետական Միության Հայրենական Մեծ պատերազմի մասին», *Հայպետհրատ, 1950 թ.։*





Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— «Ճառ պարտիայի 19-րդ համագումարում», *Հայպետհրատ, 1952 թ.։*

Գ. ՄԱԼԵՆԿՈՎ— «Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին», *Հայպետհրատ, 1952 թ.։*

1953 թվականի մարտի 9-ին, Մոսկվայում, Կարմիր հրապարակում տեղի ունեցած սգո-միտինգում

Ընկեր Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎԻ ճառը.

Ընկեր Լ. Պ. ԲԵՐԻԱՅԻ ճառը.

Ընկեր Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎԻ ճառը. (*«Ագիտատորի բլոկնոտ» № 5, 1953 թ.)։*

«Պրեզիդենտ Էյզենհաուերի ելույթի շուրջը». *«Պրավդա»-ի ապրիլի 25-ի առաջնորդողը, («Ս. Հ.», 1953 թվականի ապրիլի 26-ի համարը)։*


---


Խմբագրի տեղակալ՝ Գ. ՄՈՒՐԱԴԽԱՆՅԱՆ

*ՎՖ 01723 Պատվեր № 416 Տիրաժ 10000*

*Հայպոլիգրաֆհրատի № 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8, 1953 թ.։*